# ՎԱՐԴԱԳՈՒՅՆ ԹԱՂԱՄԱՍԸ

*ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Տղան երեկ որ կողմն էլ որ նայել էր, տեսել էր հինգվեց հարկանի վարդագույն շենքեր: Մի կես ժամ նա ցնցվել էր, նստած բրեզենտով ծածկված մեքենայի թափքում՝ իրերի վրա: Իսկ երբ վերջապես իջել էր մեքենայից՝ վարդագույն շենքերն էր տեսել. բոլորն էլ իրար նման ու բազմաթիվ: Հայրը աշխատակիցների հետ իրերը տեղափոխել էր հինգերորդ հարկ, իրենց նոր բնակարանը: Վերջացնելուց հետո նրանք սենյակում խառնիխուռն թափված իրերի մեջ մի կերպ հարմարեցված սեղանին խմել էին մի-մի բաժակ, իսկ տղան պատշգամբ էր ծլկել: Այստեղից էլ նա նորից տեսել էր շենքերը, իսկ շենքերից այն կողմ՝ կաթնագույն ու մշուշվող երկինքը:

Հիմա տղան նստած էր մահճակալի եզրին, իսկ ոտքերը հատակին չէին հասնում: Դեռ մի քանի վայրկյան առաջ նա չէր հասկանում, թե որտեղ է ինքը, իսկ հիմա հիշեց: Նա կարող էր նույնիսկ չհավատալ, թե քնել է այդ սենյակում, այնքան որ անսովոր էր ամեն ինչ:

Տղան թռավ մահճակալից ու բոբիկ ոտքերով վազեց խոհանոց: Մայրը այնտեղ բաժակներն էր լվանում: Տղան բարձրացավ աթոռի վրա, ոտքերը տակը ծալած նստեց: Նրա աչքերը փակվում էին ու դեռ չէր կարողանում փախցնել քունը:

— Արդեն կեսօր է,— նայելով որդու բարակ, շեկ աղվամազով ծածկված ծոծրակին՝ ժպտաց մայրը,— դու դեռ երբեք այսքան չէիր քնել:

Տղան դժկամությամբ ցած սահեց աթոռից: Հին բնակարանում լվացարանը ցածր էր, իսկ այստեղ այնքան էր բարձր, որ տղան ձեռքերը դժվարությամբ հասցրեց ջրին: Չգվեց ոտքերի թաթերի վրա ու կրծքով հենված լվացարանի եզրին, լվացվեց:

Լվացվելուց հետո տղան հագավ վերնաշապիկն ու կարճ անդրավարտիքը և սկսեց թրև գալ սենյակներում անկարգ դասավորված իրերի միջև: Իրերը նրան շատ լավ ծանոթ էին, բայց տղան չէր կարողանում նրանց նայել առաջվա աչքերով: Այդ ամբողջը այնքան անհասկանալի էր, որ տղան ճնշվում էր: Դեռ երեկվանից, երբ նա ոտք դրեց այդ բնակարանը և երբ տեսավ վարդագույն շենքերը, ինչ-որ բանի կարոտեց ու չհասկացավ, թե ինչի:

Նա ցատկեց հատակին թափված գրքերի կապոցների վրայով և վազեց խոհանոց: Նստեց մոր դիմաց և անթարթ մորն էր նայում: Մայրը ժպտաց նրան:

Քիչ հետո տղան խմում էր կաթը և ուտում հացի բարակ շերտի վրա քսված կարագը: Նա նորից մորն էր նայում և մայրը կրկնեց.

— Դու դեռ երբեք այսքան չէիր քնել:



*Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Լիքը բերանով տղան հազիվ ասաց.

— Մա՞:

— Ի՞նչ,— հարցրեց մայրը:

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶ
ՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆ
ՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ




Լույս է տեսնում
1923 թվականից

№ 12 ԴԵԿՏԵՄԲԵՐ
1966 Թ.

Տղան կուլ տվեց հացի կտորը:

— Մենք միշտ այստե՞ղ ենք ապրելու:

— Քեզ դո՞ւր է գալիս,— ժպտաց մայրը:

— Իսկ մեր հին տո՞ւնը,— հարցրեց տղան:

— Այնտեղ ուրիշները կապրեն:

— Ովքե՞ր:

— Չգիտեմ,— մայրը տղայի բաժակի մեջ կաթ ավելացրեց,— չէ՞ որ քեզ այստեղ դուր է գալիս:

Տղան գլխով արեց: Մայրը նայեց կաթի վրա խոնարհված որդու գլխին և կրծքի տակ խանդաղատանքի նման մի բան կզգաց: Նա ձեռքերը կրծքին խաչած մնաց այնքան ժամանակ, մինչև տղան վերջացրեց նախաճաշը և աթոռից ցած սահեց: Մայրը կանգնեցրեց որդուն, շրջեց դեպի իրեն ու, պպզելով նրա առաջ, ուղղեց վերնաշապիկը:

— Հիմա դու կգնաս բակ խաղալու,— ասաց նա,— չէ՞ որ դու սիրում ես դրսում խաղալ: Իսկ մենք հայրիկի հետ իրերը կդասավորենք: Երբ դու գաս, ավելի կսիրես մեր նոր բնակարանը:

— Հայրիկը որտե՞ղ է,— հարցրեց տղան:

— Դուրս է գնացել, շուտով կգա:

— Ես դրսում նրան կսպասեմ,— ասաց տղան:

Նա չէր համարձակվում դեպի դուռը գնալ՝ մոռացել էր, թե որն է դրսի դուռը: Այդ պատճառով էլ քաշվում էր նայել մոր աչքերին: Ի վերջո նա դուրս եկավ և շփոթված կանգնեց միջանցքում: Մայրը հասկացավ ու բացեց դուռը:

Տղան հայտնվեց աստիճանների վրա: Նա իջնում էր, երբ ներքևի հարկերից մեկում բացվեց մի դուռ և դուրս եկավ նրան հասակակից մի աղջիկ: Առանց նայելու հետևից իջնող աղջկան, տղան դուրս եկավ բակ: Ավելի շուտ դա և՛ փողոց էր, և՛ բակ. նման էր և՛ մեկին, և՛ մյուսին՝ միաժամանակ ոչ մեկին: Շուրջը քար էր ու հող. ուր էլ որ նայեիր: Եվ այդ քար ու հողի մեջ բարձրացել էին վարդագույն շենքեր:

Կեսօր էր: Տղան մոռացավ, որ իրենց հին բակում էլ այդ ժամին դրսում ոչ ոք չէր լինում: Բայց քանի որ շուրջը ամայի էր, նրա ներսում նորից արթնացավ դեռ երեկ զգացած կարոտը: Չափից դուրս խորթ էին այդ շենքերը, խորթ էր բակը, որ ո՛չ բակի էր նման, ո՛չ փողոցի: Նա տուն կգնար, բայց նույնքան օտար էր թվում և տունը:

Տղան նայեց վերև, բայց չգտավ իրենց պատուհանը: Այդպես միայնակ կանգնած, նա հանկարծ հասկացավ իրեն համակած կարոտը. ուզում էր տեսնել իրենց հին բնակարանը, ընկերներին: Հիմա, երբ տղան չնայած իր տարիքին՝ հասկացել էր ամեն ինչ, այդ կարոտը թվաց անհաղթահարելի:

Նա դանդաղ քայլեց շենքի երկայնքով ու չնկատեց, թե ինչպես իրենց շենքը վերջացավ, սկսվեցին նորերը, բոլորն էլ իրար նման ու վարդագույն: Վերջապես դուրս եկավ մի լայն պողոտա: Այստեղ մարդիկ շատ կային, անցնում էր տրամվայի գիծը, սուրում էին մեքենաները: Տղան երկար կանգնեց այդ լուսավոր փողոցում: Կանգնեց ու երբ հոգնեց կանգնելուց, գլխի ընկավ, որ տրամվայով կարող է գնալ իրենց հին տունը:

Հենց առաջին պատահած տրամվայն էլ նա բարձրացավ: Նոր տրամվայ էր, կաշեպատ նստարաններով: Բայց տղան չնստեց. նա կանգնեց տրամվայի վերջամասում և դեմքը հպեց ապակուն:

— Տոմս ստացիր,— դարձավ նրան տոմսավաճառը:

— Ի՞նչ,— հարցրեց տղան:

— Ասում եմ՝ տոմս ստացիր:

Տղան նայեց նրան կարմացած ու շփոթված:

— Չե՞ս հասկանում,— տոմսավաճառ կինը վեր քաշեց ուսերը,— ո՞ւր ես գնում:

Տղան ցանկանում էր ասել՝ գնում եմ մեր տուն, բայց անմիջապես էլ հիշեց, որ դա այլևս իրենց տունը չի ու նաև չգիտի, թե ուր պետք է գնա: Նա լուռ մնաց:

— Լսիր, տղա,— շարունակեց կինը,— հենց այս կանգառում էլ կիջնես:

— Լավ,— ասաց տղան:

Նա վախեցած էր: Վախեցած էր տոմսավաճառ կնոջից, հետո մի ուրիշ բանից, որ անհայտ էր: Այդ անհայտը ավելի սարսափելի էր: Նա կուլ տվեց տղայի կարոտը, ավելի շուտ՝ կարող էր կուլ տալ: Բայց երբ տղան իջավ տրամվայից ու հայտնվեց փողոցում, անհայտն այլևս գոյություն չուներ. կար միայն կարոտը. անկուսպ ու ցանկալի:

Կանգնած մի մեծ ցուցափեղկի առաջ՝ տղան արտասվեց: Նա պարզապես չգիտեր, թե ուր պետք է գնա: Փողոցը անծանոթ էր, անծանոթ էին մարդիկ: Քանի որ նա լաց էր եղել, արցունքների հետ միասին նորից ծնվել էր վախը: Վախն ու կարոտը հիմա միասին էին:

Հինգ-վեց տարեկան տղային հարկավոր էր տեսնել մի որևէ ծանոթ մարդու, մի որևէ ծանոթ առարկա: Տղան ինքն էլ չնկատեց, թե ինչպես աստիճանաբար հին կարոտը փոխարինվեց մի նոր կարոտով.

նա ցանկանում էր տեսնել վարդագույն շենքերը:

Տղան քայլեց լայն պողոտայով: Նրանից քիչ այն կողմ ձգվում էր տրամվայի գիծը: Երբ տրամվայի գիծն ու տղան անցնում էին կամուրջի վրայով, վերջինս նայեց ներքև: Ներքևում գետ կար: Դա տղային հաճույք պատճառեց ու մինչև կամուրջի վերջանալը նա քայլեց՝ ձեռքերը կարճ անդրավարտիքի գրպանները դրած, իսկ ոտքերը զինվորի պես թփթփացնելով:

Կամուրջը արդեն վերջացել էր, երբ տղան հանկարծ տեսավ վարդագույն միանման բազմաթիվ շենքեր: Որքան ուժ ուներ ոտքերում, տղան վազեց: Նա վազեց դեպի այդ շենքերը, իսկ երբ հասավ շենքերին՝ արանքներով, բազմաթիվ անգամներ թեքվեց աջ ու ձախ: Նա նույնիսկ ցանկություն ուներ ծիծաղելու, բայց միայն ժպտում էր ու վազում: Մի



տեղ մի փոքրիկ շնիկ փորձեց վազել նրա հետևից, բայց չհասավ, տեսավ տղայի արագ փոխվող կրունկները և նստեց ու իր շնային ուրախությունն արտահայտեց թույլ վնգստոցով:

Իսկ տղան վազում էր: Նա իրենց շենքին հանդիպեց պատահաբար, անսպասելի և այդ անսպասելիությունից կանգ առավ: Տղան տեսավ աղջկան, որին հանդիպել էր աստիճանների վրա: Աղջիկը մենակ չէր, նրա հետ կային ուրիշ տղաներ ու աղջիկներ: Նրանք խաղում էին:

Տղան կանգնել էր ու շնչում էր արագ, ընդհատումներով: Նա չմիացավ խաղացողներին, այլ մի կողմ կանգնած նայում էր: Նրա ներսում արթնացած կարոտը այդպես գտավ իր արտահայտությունը:

Եթե տղայի ուրախությունն այդքան մեծ չլիներ, անպայման կխաղար: Բայց տղան կանգնել էր, իսկ նրա կարոտը սպառվում էր, փոխվելով մի նույնքան լավ զգացման:

Տղան դեռ կանգնած էր, երբ մոտեցավ մեկը, նույն հասակի, բայց երկար անդրավարտիքով և ձեռքերը այդ անդրավարտիքի գրպանները դրած:

— Նո՞ր եք տեղափոխվել,— հարցրեց նա:

Տղան գլխով արեց:

— Մենք մի ամիս առաջ ենք եկել: Դու ո՞ր շենքում ես ապրում:

Տղան նայեց վերև, իրենց շենքին ու ասաց.

— Այստեղ:

Մյուսն առանց ձեռքերը գրպանից հանելու, ոտքով խփեց մի փոքրիկ քարի: Քարը թռավ հեռու, և նա ասաց.

— Առաջ մենք շատ հեռու էինք ապրում: Այստեղ հազար անգամ լավ է: Դու ձորում եղե՞լ ես:

— Ո՞ր ձորում:

— Զանգվի:

— Ոչ:

Անծանոթ տղան մեծավարի քմծիծաղեց:

— Իսկույն երևում է:

— Իսկ այնտեղ ի՞նչ կա,— անհամարձակ հարցրեց տղան:

— Ամեն ինչ: Ծիրանի այգիներ կան: Ճիշտ է, դեռ չի հասել, բայց ավելի լավն է: Մենք ամեն օր գնում ենք: Դու էլ կգա՞ս:

— Կգամ,— ասաց տղան:

— Իմ անունը Պերճ է,— անծանոթ տղան ոտքով խփեց մի ուրիշ քարի,— ես ապրում եմ այ այն դիմացի շենքում: Դու ծիրան սիրո՞ւմ ես:

— Սիրում եմ,— ասաց տղան,— մայրիկը միշտ գնում է:

— Հիմա ոչ մի մայրիկ էլ չի կարող գնել: Նրանք շուկայից են գնում: Իսկ շուկայում դեռ ծիրան չկա: Ուրեմն կգա՞ս:

— Կգամ,— հանկարծակի ուրախացավ տղան:

— Գագիկին ու Լևոնին էլ կասենք: Իսկ քո անունն ի՞նչ է:

— Սուրիկ: Բայց ձորը ո՞ր կողմում է:

— Շենքերից այն կողմ: Ճանապարհը ես գիտեմ:

Տղան նախանձով ու հիացած նայեց Պերճի երկար ու փոշոտ անդրավարտիքին:

— Դե լավ,— ասաց Պերճը,— ես գնացի: Տես, չմոռանաս: Վաղը գնում ենք:

Պերճը տղային ձեռքով արեց ու վազեց: Վազելու ընթացքում նա աղջկա ձեռքից թռցրեց գնդակը ու ոտքով հարվածեց հեռու: Հեռվից նա լսեց Պերճի ուրախ ծիծաղը, իսկ հետո նրա ձայնը.

— Ցտեսություն, Սուրիկ:

— Ցտեսություն, Պերճ,— ձեռքով արեց տղան:

Նա հպարտ քայլեց բակում խաղացող երեխաների միջով դեպի իրենց մուտքը: Նա ընկեր ուներ, այն

## ՀՐԱԺԵՇՏ

### ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Պաղ եղյամը լեռան ուսի
Ցուրտ բաժանեց օրերին,
Շուտով մնաք բարով կասի
Այգեպանը ձորերին:
Մնաք բարո՜վ. կասի. տնա՛կ.
Աղբյու՛ր, առվա՛կ դու վազող.—
Եվ կմնա այգին մենակ
Լռության մեջ երազող:
Մեր ձորերին նարնջագույն
Կիջնի մուժը կապարի.

Եվ նապաստակն այն տնակում
Կգա շուտով կպարի:
Կանցնի աշունն այս անտառում,
Չի թողնի սեզ ու արոտ.
Նա կվառի ամեն սրտում
Գարնան բորբոք մի կարոտ:
Տես. լցվել են խոհով խորունկ
Ուռիները գետափին.
Շուտով անտառը մեր ծերուկ
Իր տերևը կթափի:

էլ ինչպիսի ընկեր: Թիկունքին նա զգում էր մյուսների հիացական հայացքները: Այդպիսի արժանապատվությամբ նա քայլեց այնքան ժամանակ, մինչև հասավ աստիճաններին ու ծածկվեց նրանց աչքերից: Այստեղ տղան ազատություն տվեց իր ուրախությանը և սկսեց աստիճանները բարձրանալ մի ոտքի վրա ցատկոտելով: Տղան ցատկոտում էր ու քիչ մնաց դիպչեր աղջկան: Նա անմիջապես լռչացավ: Քանի որ աղջիկը շրջվեց, տղան տեսավ նրա այտերի վրա արցունքի կաթիլներ:

Անհասկանալի ինչ-որ բան շարժվեց տղայի ներսում: Բայց ավելի ուժեղ էր քիչ առաջ ծնված տղայական հպարտությունը և նա հարցրեց.

— Ինչո՞ւ ես լալիս:

Աղջիկը չպատասխանեց:

— Դե լավ,— տղան ակամա ձայնը նմանեցրեց Պերճին,— ես կասեմ Պերճին, որ սրանից հետո քեզ չնեղացնի:

Աղջիկը փորձեց ժպտալ:

— Անպայման կասեմ,— կրկնեց տղան ու բարձրացավ, զգալով, որ աղջիկն էլ նայում է իր հետևից՝ մյուսների նման հիացած:

Բայց տանը քիչ էր մնացել, որ տղայական ողջ հպարտությունից հետք էլ չմնար: Հայրը, որը բացել էր դուռը խստորեն հարցրեց.

— Որտե՞ղ էիր:

Բայց տղան հաղթեց հորը: Նա ներքևից վերև նայեց մի այնպիսի ժպիտով, որ հայրը բավարարվեց:

— Սուրիկ,— մյուս սենյակից ձայն տվեց մայրը,— արդեն վերջացնում ենք:

Տղան գնաց մոր մոտ: Նա հոժարակամ թույլ տվեց, որ մայրը համբուրի երկու այտերը, հետո մի քիչ էլ թրև եկավ սենյակներում: Բոլոր իրերն էլ վաղուց ծանոթ ու հարազատ էին: Հետո նա դուրս եկավ պատշգամբ:

Պատշգամբից երևացին վարդագույն շենքերը: Ամբողջ թաղամասը վարդագույն էր: Արևը ցածրացել էր ու անցնում էր թաղամասի թիկունքը:

Տղան շրջվեց ու նայեց իր հետևում կանգնած հորը:

— Պապ,— խոսեց նա,— ի՞նչ կա շենքերից այնկողմ:

Հայրը կծեց շրթունքը լավ մտածելու համար և ասաց.

— Ինչ իմանամ: Միգուցե բլուրնե՞ր:

— Ոչ,— գլուխը շարժեց տղան:

Հայրը ավելի լավ մտածեց:

— Դաշտ է,— ասաց նա:

— Ոչ էլ դաշտ է:

— Ուրեմն ի՞նչ է,— հայրը թեքվեց, որպեսզի լավ տեսնի որդու դեմքը:

— Ձոր,— ասաց տղան,— Զանգվի ձորն է: Վաղը ես գնալու եմ այնտեղ: Կգամ, կպատմեմ:

Հայրը ավելի խորը նայեց որդուն: Հետո շրջվեց և ժպտաց հետևից մոտեցած ու դռների մեջ կանգնած կնոջը:

Իսկ արևը արդեն գրեթե թաղվել էր վարդագույն թաղամասի թիկունքում:



# ՉՈՐՍ ոսկեգույն ԿՈՃԱԿ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Հանկարծ ծխի միջից հայտնվեց հինգ-վեց տարեկան մի աղջիկ՝ վուշե մազերով, չթե սպիտակ դեյրան հագին: Դեմքը նիհար էր, դեղնավուն, ուստի առանձնապես ընդգծվում էին կապույտ, մեծ-մեծ աչքերը: Այդ աչքերը մեծավարի լուրջ էին ու մի քիչ էլ տխուր: Աղջիկն արդեն դուրս էր եկել դարբնոցից, բայց շորն ու մազերը շարունակում էին ծխալ:

Քոթոթը շարժեց պոչը, շրթունքները լիզեց ու աչիկները [illegible]կեց անծանոթ աղջկա վրա: Ահա և լավ խաղընկեր...

Աղջիկն էլ նրան տեսավ, ու իսկույն դեմքը փայլեց: Վեհերոտ քայլերով մոտեցավ Քոթոթին ու շոյեց նրա գլուխը: Փոխարենը Քոթոթը լիզեց նրա ձեռքը: Աղջիկը սիրտ առավ ու նորից շոյեց շան գլուխը: Քոթոթն իր հերթին նորից լիզեց նրա սպիտակ թաթիկը: Ողջույնների փոխանակությունը կատարված էր, ծանոթությունը տեղի էր ունեցել: Մնում էր մտերմություն հաստատել:

— Իմ անունը Ալիս է,— ասաց աղջիկն ու նստեց նրա կողքին, խոտերի վրա:— Իսկ սա մեր դարբնոցն է, իսկ իմ հայրիկը դարբին է, իսկ իմ եղբայրները աշակերտ են նրա մոտ, իսկ իմ հայրիկը շատ ուժեղ է, բա՞... Իսկ ես կարող եմ փուքս փչել, իսկ հայրիկս ասում է, որ ես դեռ թույլ եմ և ինձ մաքուր օդ է հարկավոր, իսկ դարբնոցում օդը մաքուր չի, բա՞... Դրա համար էլ ինձ շուտ-շուտ դուրս է ուղարկում, որ մաքուր օդ շնչեմ, ու ես տեսա քեզ, բա՞... Քո անունն ի՞նչ է:— Եվ Ալիսը վստահորեն գրկեց Քոթոթի վիզը:

Դա շատ դուր եկավ Քոթոթին. սա սիրում էր, երբ գրկում էին իր վիզը: Սկսեց հոտոտել աղջկա շորը, ձեռքերը, և նրանից անուշ հոտ էր գալիս: Ոնց որ իսկը Մհերի հոտը լիներ, միայն մի քիչ ուրիշ տեսակ: Իսկապես: Քոթոթը տարբերում էր հոտերը, և այդտեղ ոչ ոք չէր կարող նրա հետ մրցել:

Ալիսն ուզում էր մի բանով հյուրասիրել նրան. Քոթոթն անսխալ կռահեց այդ. աղջիկը եռանդով գրպանիկներն էր քրքրում, բայց ոչինչ չգտավ: Ափսո՜ս: Ալիսը վեր թռավ տեղից, վազեց դեպի դարբնոցը և, գլուխը շուռ տալով, ձայն տվեց.

— Չգնաս հա՞...

Քիչ հետո նա դուրս թռավ ծխի միջից և, հազալով ու փռշտալով, մոտեցավ Քոթոթին: Բայց դեռ երկար ժամանակ չէր կարողանում հանգստանալ:

— Հենց որ վազում եմ, միշտ այդպես է լինում,— բացատրեց նա:— Հայրիկը բարկանում է վրաս, իսկ ես չեմ վախենում... Ախր գիտեմ, որ սուտից է բարկանում: Իսկ որ իսկականից եղավ՝ օ՜յ-օ՜յ-օ՜յ... Ախր իմ հայրիկը շատ ուժեղ է, աշխարհիս երեսին ինչքան մարդ կա՝ բոլորից, բոլորից ուժեղ է, բա՞...

Բայց Քոթոթը չէր լսում նրան: Նա աչքը տնկել էր աղջկա գրպանին, որտեղից դուրս էր ցցվել թղթի մեջ փաթաթված երշիկի գլուխը, և ստեպ-ստեպ շրթունքներն էր լիզում: Հանկարծ Ալիսը նկատեց նրա հայացքն ու զարմանքից ծափ տվեց.

— Վա՜յ, իսկ ես մոռացել էի:

Քոթոթն ընկավ երշիկի վրա: Նա երշիկ շատ էր սիրում: Ափսոս միայն, որ մեջը ոսկոր չկա: Բայց առանց ոսկորի էլ ոչինչ: Ուտել կարելի է:

Ալիսն ուշադրությամբ հետևում էր շան ուտելուն: Նա թուքը կուլ տվեց. նույնիսկ իր ախորժակը բացեց՝ այնքան որ համով էր խժռում...

Երշիկը վերջացավ: Քոթոթը հոտոտաց շուրջը, շրթունքները լիզեց ու աչքերը տնկեց աղջկա վրա՝ էլ չկա՞:

— Էլ չկա, պրծավ: Ճաշից էր մնացել: Իրիկունը կուշտ կուտես:

Քոթոթը, իհարկե, ոչինչ չհասկացավ ու շարունակում էր անքթիթ նայել նրան. միգուցե էլի մի բան ունի պահած:

Ալիսը բարկացավ.

— Չի կարելի այդպես ագահ լինել, հասկա-

---

Սկիզբը՝ «Պիոներ» № 9, 10, 11:

ցա՞ր,— ասաց նա, փոքրիկ մատը թափ տալով շան քթի տակ:

Քոթոթը, վերջապես, հասկացավ կամ գուցե չհասկացավ, այլ ուղղակի հոգնեց աղջկան անթարթ նայելուց, ուստի դունչը պարզեց ու նորից լիզեց նրա ձեռքը:

— Ա՛յ, այդպես: Պետք է խելոք լինել: Իսկ հիմա ի՞նչ անենք: Դու խաղալ գիտե՞ս: Չէ՞: Ես գիտեմ «դասարան-դասարան» ու տափկնոցի: Խաղա՞նք: Չէ, ավելի լավ է դարբնոցը ցույց տամ քեզ: Ծուխը մեզ ոչինչ էլ չի անի: Դրսից է այդպես երևում, իսկ ներսում ոչինչ: Միայն պետք է կուզեկուզ մտնել, ա՛յ, այսպես:

Քոթոթը դռնից ետ-ետ քաշվեց: Բայց ախր Ալիսի հետ գնալը շատ էր գայթակղիչ: Մեկ էլ տեսար մի նոր երշիկ կամ ուրիշ համեղ բան տրվեց: Միայն թե այս ծուխը չլիներ...

— Դե, մի՛ վախենա, ծուխը մեզ ոչինչ էլ չի անի: Միայն պետք է կուզեկուզ... Ա՛յ, ապրես, տեսա՞ր, ինչ խելոքն ես. փորսող տուր, փորսող: Ո՞վ է քեզ սովորեցրել...

Բայց Քոթոթն այլևս նրա ձայնը չէր լսում. չորս կողմ, այնպիսի շռինդ ու դղրդյուն էր, որ կարելի էր խլանալ: Քոթոթն արդեն ուզում էր դուրս ծլկել, բայց տեսավ Ալիսը ծիծաղում է: Ճիշտ է, նրա ձայնը չէր լսում, բայց հո պարզ տեսնում էր, որ ծիծաղում է: Ուրեմն, վախենալու բան չկար: Քոթոթը սրտապնդված նայեց դեպի դարբնոցի մյուս ծայրն ու ինչ տեսնի. զնդանի վրա կարմրին էր տալիս երկաթի քառանկյունի մի կտոր, որ դարբինը բռնել էր ունելիով ու մուրճով հարվածներ էր տեղում նրա վրա: Մուրճի հարվածներին հաջորդում էին աշակերտի հսկայական կռանի հզոր թնդյունները՝ կայծերի խուրձեր ցրելով չորս կողմ:

Դարբնի կերպարանքը սարսափելի էր: Խոշոր գլուխը ծածկված էր խռիվ մազերով, դեմքը կորել էր մազ-մորուքի մեջ: Այդ սև մացառուտից դուրս էր ցցվել մրոտ, կարմիր, մսեղ քիթը, իսկ հաստ հոնքերի տակից կայծակում էին խոշոր աչքերը: Նա կարճահասակ էր, թիկնեղ: Լարված մկանների հանգույցները խլրտում էին մաշկի տակ, հզոր կուրծքը փուքսի նման ելևէջում էր:

Տղան հոր հակապատկերն էր. բարձրահասակ, կանոնավոր կազմվածք, խիտ զանգուրներ, մաքուր սափրած երկարավուն դեմք ու քաղցրաժպիտ կապույտ աչքեր: Դժվար էր նույնիսկ հավատալ, թե նրանք հայր ու որդի են:

Երբ երկաթը բոլորովին մթնեց, սևացավ, մուրճերը հանգստացան, դարբինը ունելիով թեթևությամբ նետեց այն մոտիկ տաշտի մեջ: Ջուրը թշշաց, տաք գոլորշին ամպ կապեց մրոտ առաստաղի տակ ու հալվեց: Դարբինը մի նոր երկաթ դրեց բուրայում, ածուխը վրա արեց, և փուքսի մոտ կանգնած տղան անցավ գործի: Ածուխները ճթճթացին, կայծեր շաղ տվին շուրջը, ապա բռնկվեցին պայծառ, շիկավուն բոցով: Հենց այդ լույսի տակ էլ Քոթոթը նկատեց երկու ուրիշ մարդկանց, որոնք կանգնել էին դարբնի հետևում, պատի մոտ, ոտից գլուխ զինված, անշարժ, ինչպես արձաններ:

Դրսից լսվեց Մհերի ձայնը, որ կանչում էր նրան: Քոթոթը շուռ եկավ ու գնդակի պես նետվեց դեպի ելքը: Նրա հետևից, ծանր սապոգները դոփելով, արտասովոր արագությամբ դուրս թռան երկու զինված ոստիկանները, և մինչ Մհերը ուշ-



քի կգար, բռնեցին նրա ականջներից ու վեր բարձրացրին:

— Ո՞վ ես,— միաձայն բղավեցին նրանք:

— Ցավո՜ւմ է,— ծղաց Մհերը:

— Ո՞վ ես,— նորից բղավեցին ոստիկանները:

— Վա՜յ, բաց թողեք, որ ասեմ։

Ոստիկանները բաց թողեցին նրան, երևի համոզվելով, որ այդ ձևի հարցաքննությունը արդյունք չի կարող տալ։

— Ո՞ւմ տղան ես։

Հասկանալով, որ փախուստի փորձն իզուր է, Մհերը պատասխանեց.

— Որ ասեմ, կճանաչե՞ք։

Շրա՛խկ։ Շրա՛խկ։ Համարյա միաժամանակ երկու ապտակ իջավ երկու երեսին։ Աչքերից կայծեր թռան։ Քոթոթը կատաղի հաչոցով նետվեց ոստիկանների վրա, բայց սապոգի մի հարված նրան շպրտեց հեռու, խոտերի վրա։

Մհերը խլեց մոտիկ կանգնած ոստիկանի ձեռքը, ատամները խրեց դաստակի մեջ, ուշադրություն չդարձնելով գլխին տեղացող հարվածներին։

— Մի՛ ծեծեք, մեղք է։

Ոստիկանները ոչ մի ուշադրություն չդարձրին աղջկա վրա, որ հուսահատությունից մատներն էր կոտրատում։ Ալիսը հեկեկալով ներս ընկավ դարբնոց ու նետվեց դեպի հայրը.

— Հայրի՜կ, ծեծում են...

Դարբինը հսկա ափը դրեց աղջկա ուսին ու սեղմեց իրեն։ Երկու տղաները կանգնել էին նրա առաջ և ասես սպասում էին հրամանի։

— Հայրի՛կ, ծեծում են,—նորից հեծկլտաց աղջիկը։

Դարբինը աղջկան հեռացրեց և, առանց որդիների կողմը նայելու, ծանր քայլերով գնաց դեպի ելքը։ Տղաները նայում էին նրա հետևից։ Հասնելով դուռը, դարբինը մի երկու քայլ էլ առաջացավ ու հանկարծ քարացավ տեղում, ասես ապշած զարմանալի տեսարանից։ Տղաները վազեցին դեպի ելքը և, հասնելով հորը, նույնպես արձանացան։ Ալիսը գլուխը դուրս էր հանել դարբնի թևի տակից ու նայում էր ապշած աչքերով։

Երկու աժդահա ոստիկաններն անշարժ փռվել էին գետնին, ոտքերը լայն տարածած։ Հրացաններն ընկած էին բավական հեռու, խոտերի մեջ։ Մոտիկ թմբին հանգիստ շարվել էին չորս տղաներ։ Նրանցից մեկը (դա Արտակն էր) ամենափոքրի երեսն էր մաքրում։ Ամենաբարձրահասակը շապկի պատռված փեշով սրբում էր ակնոցի ապակիները, քթի տակ ինչ-որ երգ սուլելով։ Իսկ աջ ծայրին նստածը ձեռքով շարունակ անհնազանդ մազերն էր ետ տալիս, ատամների մեջ խոտի մի կանաչ շյուղ պտտեցնելով, միաժամանակ աշխատելով ձայնակցել ակնոցավորոչ սուլոցին։ Շուրջը խաղաղ էր, հանգիստ, երեկոյան ստվերներով պարուրված։ Ամեն ինչ տրամադրում էր երազելու, ձուլվելու բնությանը, լուծվելու նրա հրաշալի ներդաշնակության մեջ։ Եվ երբ տղաներն սկսեցին խոսել, նրանց ձայնը չխռովեց երեկոյի անդորրը, այլ ավելի խորացրեց այն։

— Զվելին բացով խփեց Քոթոթի փորին,— ասաց փոքրը։ Դա Մհերն էր։

— Բան չկա։ Դու էլ լավ վրեժն առար,— ասաց Արտակը։

Մհերը կամացուկ ծիծաղեց։

— Որ կծեցի, արջի պես գոռաց...

— Քոթոթն էլ քաջ շուն է։

— Քոթոթը ամենաքաջ շունն է, դու չգիտես...

— Այո, ամենաքաջը... Քնիր։ Գլուխդ դիր ուսիս, քնիր։

— Քունս չի տանում... Իսկ Աշոտը լավ կերցրեց էն արջին։

— Դե, Աշոտն ուժեղ է...

— Իսկ Գիմնազիստին ես այդպես չգիտեի. էն մյուսի դնչին մի հարված որ հասցրեց, զըռ՛մփ,— հասակով մեկ փռվեց գետնին։

— Գիմնազիստը ծածուկ բռնցքամարտով է պարապում...



— Ինչու՞ ծածուկ։

— Հայրը որ իմանա, կարգելի։ Նա ուզում է Տիգրանը գիտնական դառնա։

— Տիգրանը հիմի էլ գիտնական է։ Ամեն բան գիտի... Իսկական գիտնական։

— Քնիր։

— Քունս... չի տանում։

Բայց Մհերն արդեն քնել էր։

Գիմնազիստն ու Աշոտը ավելի սակավախոս էին։

— Ինչ ես կարծում, կթողնե՞ն այսօր գիշերը,— հարցրեց Աշոտը։

— Երևի պետք է հարցնել այն Հեփեստոսին։

Արևը մայր մտավ, և ստվերներն սկսեցին արագորեն խտանալ։ Մոտակա ձորակից հասավ առվակի բլբլոցը։ Չինարի կատարի տերևները թրթռացին

Լափից մի խուլ կանչյուն։ Տղաները գլուխները բարձրացրին՝ դարբինն էր. ինչ-որ բան էր ասում երկու երիտասարդներին։ Երկու երիտասարդներն արագ մոտեցան նրանց, մեկը գրկեց Մհերին, իսկ մյուսը միայն մի բառ ասաց. «Գնանք»։ Անցան կիսամութ դարբնոցի միջով (դարբինն արդեն վառել էր ապակին կոտրած լամպը) ու մի բոպե կանգ առան անկյունում։ Երիտասարդներից կրտսերը շտապով վեր բարձրացրեց պատից կախած արջի մորթին ու բաց արեց դրա տակ ծածկված փոքրիկ դռնակը։ Մհերին գրկողը երկուտակվելով ներս անցավ դռնակով, մյուսները հետևեցին նրան։ Հայտնվեցին մի փոքրիկ քողտիկում։ Այստեղ ոչ մի կահույք չկար։ Հողե հատակը ծածկված էր արդեն մաշված մորթիներով։ Երիտասարդն զգուշությամբ ցած դրեց երեխային, վառեց ձեթի ճրագը։

— Հանգստացեք, մինչև նրանք գնան,— ասաց նա ու դուրս եկավ քողտիկից, դուռն աղմուկով ծածկելով իր հետևից։

— Եթե մի բան տային ուտելու, վատ չէր լինի,— ասաց Աշոտը։

— Ծածկի համար էլ շնորհակալ եղիր։

— Քնենք։

— Քունս չի տանում, քաղցած եմ...

Հանկարծ քողտիկը ցնցվեց կռանի հարվածից։ Դարբնոցում նորից գործի անցան։ Մուրճն ու կռանը թափով իջնում էին զնդանին, և պատերը ճոճվում էին ասես երկրաշարժից, մեխերից կախված դույլերն ու թավաները զնգում-զրնգում։ Քողտիկի դուռը կամացուկ բացվեց, ներս եկավ Ալիսը, ձեռքի պղնձե թեյամանը ցած դրեց, ըզգուշությամբ բացեց թևի տակ պահած սփռոցը, որի մեջ կես բուխանկա հաց կար, մի կտոր պանիր ու մի քիչ երշիկ, հանեց ծոցից թղթի մեջ փաթաթած մի քանի կտոր շաքար, պատի թարերից իջեցրեց երեք հատ գավ՝ ամբողջ եղածը, ապա գնաց դեպի դուռը։

— Հայրիկն ասաց՝ թող ներեն, եղածն էս է,— և դուռը կամացուկ ծածկեց։

Տղաները լուռ մնացին տեղներում նստած, ոչ որ չմոտեցավ սփռոցին։ Քոթոթը միայն կաղին տալով պտտվեց սփռոցի շուրջը, հոտոտեց ու նորից գնաց իր տեղը, պառկեց Մհերի ոտքերի մոտ։

— Հը՛մ,— խոսեց Արտակը,— այնքան էլ լավ չեն ապրում Թորիլ թագավորի հպատակները... Եվ վարտիքն էլ կոճակ չունեն...

—Նորից չսկսես քո կոճակային ենթադրությունները,—զգուշացրեց Աշոտը։

— Տրամադրություն չկա։

— Ավելի լավ։

— Եկեք ուտենք,—առաջարկեց Տիգրանը,—թե չէ կվիրավորենք տանտերերին։

Դարբնոցում մուրճերը լռեցին, և մի պահ ամեն ինչ խաղաղվեց։ Ապա լսվեց ծանր սապոգների մոտեցող թփթփոց։ Լռություն. սապոգները կանգ առան։

— Ո՞ր կողմն այն... այն լակո-տները... հափշը՛խ,— հնչեց մի խռպոտ ձայն։

— Ի՞նչ լակոտներ։— Դա երիտասարդներից մեկն էր։



— Ու-ու-ու՜, անիծվածներ, գրողի տարածներ, ավազակներ... Ի-ի-իբր թե չեք ի-իմանում... հափշը՛խ... Չորս լակոտներ, հետներն էլ մի ու-ուրիշ լակոտ... հափշը՛խ... իսկական...

— Առողջություն։

— Գլխիդ կպչի... Բան են հարցնում, պատասխան տուր, խո-ոսքը կտուր մի-ի-ի... հափշը՛խ... գցիր։

— Մենք ոչ մի լակոտ չենք տեսել։ Եվ ի՞նչ գործ ունեն այստեղ լակոտները...

— Իհարկե, չեք տեսել... Գոլորշիացան... Սրիկաներ, զարշելիներ, իժի ծնունդներ... Բոլորիդ էլ լավ եմ ճանաչում։ Խռովարար ա-ա-ա... հափշը՛խ...

— Լավ մրսել եք։ Առողջություն։

— Անաստվածնե՛ր։ Իբր թե ցավակցում ես, հա՞... Բոլորիդ պետք է մեկ-մեկ ցցի զարկել, որ խելքի գաք։ Հայրենիքի ու թագավորի դավաճաններ, ապերախտ է-է-է... հափշը՛խ...էշեր, սողուններ։ Է՜յ, մեծ ավազակ, դու՞ ինչ կասես։ Բերանդ ջուր ես առել, իբր թե բանից անտեղյակ ես, հա՞... Ու-ու-ու՜, ես քեզ լավ եմ ճանաչում։ Թագավորի տեղը լինեի, գլուխդ կտրել կտայի, և ոչ թե լեզուդ։ Այդպես մի՛ նայիր ինձ, ա-ա-ա... հափշը՛խ... ան-աստված, թե չէ աչքերդ կհանեմ, որ էս լույս աշխարհը չտեսնես։ Իսկ էն լակոտները ձեռքից չեն պրծնի, մեկ է։ Առանց ձեր օգնության էլ կբռնեմ ու վզները կոլորեմ։ Հապա այստեղ արի, աղջիկ։ Արի, մի՛ վախենա, քեզ չեմ ուտի։

— Անունդ ի՞նչ է... Ասում եմ՝ անունդ։ Անունդ չգիտե՞ս։

— Ալիս։

— Ի՜նչ ես ասում։ Մի՞թե Ալիս։ Իմ աղջկա անունն էլ է Ալիս։ Ամենալավ անունն է աշխարհում... Ուրեմն, դու լավ աղջիկ ես, Ալիս, և գիտե՞ս, թե որտեղ են թաքնվել այն տղաները։

— Ի՞նչ տղաներ։

— Դե, այն տղաները, որ նստած էին ձեր չինարի տակ... Այն փոքրիկ շան տերերը, որը քեզ հետ եկավ այստեղ...

— Այն սև շու՞նը։

— Հիշեցի՞ր։

— Նա տեր չուներ։

— Դե, ինչպե՞ս թե տեր չուներ։ Ուներ, այն էլ՝ չորսը։ Չի կարող պատահել, որ դու նրանց տեսած չլինես։ Հապա, աշխատիր հիշել։

— Չեմ հիշում։

— Օ-օ՜, գրողը տանի,— ատամների արանքից մռմռաց ոստիկանը։— Դե, ախր ինչպե՞ս է, որ չես հիշում՝ չորս տղաներ, մեկը, կարծեմ, ակնոցավոր և մի շուն...

— Շանը հիշում եմ։

— Ա՛յ, տեսնու՞մ ես։ Ուրեմն, տերերին էլ պիտի հիշես։ Այնպես չի լինում, որ մարդ շանը հիշի, իսկ տիրոջը՝ ոչ։

— Լինում է։

— Ա՛յ, եթե հիշես... այս մեդալը քեզ կտամ։ Բոլորովին, բոլորովին կտամ։ Տեսնու՞մ ես, այս երեսին մեր Թոքիլ թագավորի նկարն է։ Թոքիլ թագավորը երեխաներին շատ է սիրում ու բոլորին էլ մեկ-մեկ ճանաչում է։ Քեզ էլ է ճանաչում։ Անցյալ օրն ասում էր. «Ես Ալիսին շատ եմ սիրում, պիտի բերել տամ՝ աղջկաս հետ խաղա»։ Հապա։ Մեր Թոքիլ թագավորն ամենաբարի ու լավ թագավորն է... Այս մեդալն էլ նա ինքը տվեց ինձ ու պատվիրեց. «Հենց որ Ալիսը այն տղաների տեղը ասի, այս մեդալը կնվիրես նրան»։

— Թոքիլ թագավորն ի՞նչ գիտեր այն տղաների մասին։

— Թոքիլ թագավո՞րը... Օ՜, մեր Թոքիլ թագավորն իմաստուն է, ամեն ինչ գիտի... Հապա ո՜նց։

— Որ այդպես է՝ նրանից իմացիր այն տղաների տեղը։

— Ա՜, օձի ծնունդ, այդպես էլ գիտեի,— ատամները կրճտացրեց ոստիկանը։ — Դե, հերիք պարապ ճանճ որսաք, գործ արեք... սրիկաներ։

Դարբնոցում վերսկսվեց սովորական շաչ ու շառաչը։

Տղաները հեռացան դռնակից։

— Քնենք,— ասաց Աշոտը։

— Քնենք։

Պառկեցին մորթիների վրա, սակվեցին։ Ամեն մեկն զգում էր, որ ընկերը քնած չէ։ Այնքան բան կար մտածելու...

— Լեզուն կտրել են,— ասես ինքն իրեն խոսեց Արտակը։

Աշոտն ու Տիգրանն էլ, երևի, այդ մասին էին մտածում, բայց չարձագանքեցին։

— Տեսնես ինչի՞ համար,— հարցրեց նա և, պատասխան չստանալով, այս անգամ ուղղակի դիմեց կողքին պառկած ընկերոջը.— Տիգրան, տեսնես ինչի՞ համար են կտրել լեզուն։

— Ինչի համար որ թագավորները կտրում են մարդկանց լեզուները, բանտարկում, կախաղան են հանում. ճշմարտությունն ասելու համար։ Հիշու՞մ ես՝ «Ու միշտ, քանի որ կա շահ ու գերի, ստրուկ ու տեր, չի լինելու երկրի վրա ո՛չ շիտակ խոսք, ո՛չ կյանք, ո՛չ սեր...» Ա՛յ թե ինչի համար։

— Իսկ Ալիսը կեցցե՛։

— Հոր աղջիկն է։

— Նա թույլ չի տա, որ իր լեզուն կտրեն։

— Թույլ չի տա։

— Իսկ քո լեզուն որ կտրեին, գլուխներս չէի՞ր տանի ու կթողնեի՞ր քնեինք,— զայրացած փշշացրեց Աշոտը...

Տղաները փխկփխկացին կամացուկ ու վերջապես լռեցին։

Դարբնոցը դղրդում էր։

(Շարունակելի)



# ԶԱՐՄԱՆԱԼԻՆ







ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Զարմացավ,
Ինչ որ ասին, չզարմացավ.
Ի՜նչ մեծ բան է
Երկրաբա՜նը,
Իրեն համար ման է գալիս,
Սիրուն սարեր,
Անտառ ու դաշտ,
Հարուստ հանքի հանդիպելիս
Տարածում է իր համբավը.
Ի՜նչ մեծ բան է երկրաբանը։

Զարմացավ,
Ինչ որ ասին չզարմացավ.
Մի անձնուրաց կտրիճ, ասին,
Փոքրիկ լաստով օվկիանն անցավ։
— Ի՜նչ մեծ բան է, ջուր է, էլի՜,
Բարեհաջող քամի լինի,
Ալիքներն էլ ծփան հանդարտ
Ու չսպառնան,
Ես օվկիանն էլ կանցնեմ ու դեռ
Ետ կդառնամ։

Զարմացավ,
Ինչ որ ասին, չզարմացավ.
Ատոմ, միջուկ,
Ի՞նչ եք վիճում.
Մի գիտնական
Հազար անգամ
Նույնը փորձում,
Հազար անգամ մշակում է
Եվ գյուտն այդպես
Իրեն-իրեն հայտնագործում։

Կամ տիեզերք թռչող մարդիկ,
Ով էլ լինի մեքենայում,
Որ կրակեն,
Էլ ու՞ր պիտի թռչի՝ երկինք,
Ի՞նչ կա այստեղ զարմանալի,
Որ հեռավոր աստղերի մոտ
Մեքենայից դուրս է գալիս՝
Թոկը ամուր բռնած ձեռքում
Ու լողալով, իրեն համար
Ման է գալիս տիեզերքում...
Ասում են, թե... բայց ո՞րն ասեմ.
Նկարիչը նկարում է.
Ի՞նչ կա այստեղ զարմանալի.
Թող ներկ լինի։
Կամ հենց թեկուզ քանդակողը.
Թողած հողը,
Քար է տաշում.
Որ չիմացողն, ասի, իրա՛վ,
Շա՜տ է դժվար,
Խեղճ մարդ. տեսեք ի՜նչ է քաշում...





Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Զարմացավ,
Ինչ որ ասին, չզարմացավ...
Մի օր, սակայն, նա բակ իջավ,
Ընկերներից կանչեց մոտիկ.
— Գիտե՞ք,—ասաց,—այսօր պատին
Մեխ եմ խփել, և ո՜վ զարմանք,
Ուղիղ գնաց.
Զարմանում եմ,
Ինչքա՜ն պիտի վարպետ լինել,
Որ չծռեր...



# ԱՆԴՈՒՆԴԻ ՊՌՆԿԻՆ

(Որսկան Շաքարի արկածներից)

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Նորից աշուն եկավ. մեր անտառները մեկ էլ դեղնեցին ու տերևաթափ եղան:

— Տղե՛րք, հիմի արջերի չաղ ժամանակն է, գնանք մի բախտներս փորձենք.— ասացի մի օր գյուղամիջում:

Հենց էդ օրը Ղազարենց Հանեսի ու Ալիխանենց Արթնի հետ ճամփա ընկանք դեպի Հաղարծնի անտառը: Ես ծմակի բերանին, մի քարափի թիկունքում տապ արի, իսկ տղերքը գնացին ներքևի ձորից սուրագ[1] անեն: Արևկող արած էնքան նստեցի, ո՛ր քունս տարավ:

Մեկ էլ տեսնեմ՝ տղերքը դատարկ, քոռ ու փոշման ետ են գալիս:

— Տղե՛րք, բա ու՞ր է որսը:

— Չատ չկա, Շաքար ամի, հոգիներս դուրս եկավ, էնքան ման եկանք,— պատասխանեցին նրանք ու հոգնած պառկեցին խաշամի[2] վրա:

Ափ՝ տղերք, հիմի էլ դուք պատրաստ կացեք, ես գնամ, տեսեք արջին հանու՞մ եմ, թե՞ չէ: Ես էլ հաստատ գիտեմ, որ էդ կողմերում արջ կա: Երեսս թեքեցի դեպի դիմացի կաղնուտը: Գիտեմ, որ արջը հիմի կաղին ուտելիս կլինի:

Ձորն ա̥նցկացա, մտա կաղնուտը տեսնեմ՝ խաշամը տեղ-տեղ ետ է տված: Արջն է արել ... Նշանները նոր են, սկսեցի առաջ գնալ մատներիս ծերով, որ խաշամը չխշխշա ու չորացած ճյուղերը ոտքերիս տակ չջարդվեն: Բարձրացա մի փոքրիկ թմբի գլուխ, մեկ էլ տեսնեմ ծառերի արանքում, մի ահագին սև անասուն: Աչքի տակով գողեգող համ նայում է ինձ, համ առաջ գնում, էնպես զգույշ, որ իրեն չտեսնեմ: Համա գիտեմ, որ քարափն անցկենալուն պես, ամեն ինչ ջարդուփշուր անելով, փախչելու է: Հետևս անդունդ է, առաջս՝ գազանը: Հիմի ի՞նչ անեմ: Թե կրակե՜մ՝ լավ գիտեմ, որ էդ ահագին սարին մի գնդակով սպանել չի լինի, ես էլ ո՛չ փախչելու տեղ ունեմ, ո՛չ՝ ընկեր: Անիրավը վերևից վրա կտա, բուրդս կգզի:

Հրացանս ուղղեցի, որ կրակեմ՝ սիրտ չարի: Արջը հասկացավ, աչքի տակով կատաղած նայեց ու էն է, ծառերի արանքում կորչում էր՝ կրակեցի: Դրա բրդոտ կողքից կանաչավուն ծխի քուլա երևաց,— հասկացա, որ կպել է: Էդ անտերն էնպես գոռաց, որ սար ու ձոր դմբդմբաց: Գոռգոռալով ո՜նց է գալիս ... Հիմի էլ, որ միտս է ընկնում՝ մազերս փշաքաղվում են: Ինձ չկորցրի՝ ետ գնացի՝ անդունդի պռնկին վեր ընկած մի ծառ կար, մտա դրա տակը:

Արջը մռնչալով եկավ ու կանգնեց գլխիս վե-

---

[1] Սուրագ անել—որսը քշել

[2] Խաշամ—չորացած տերևներ

րսը, համա ինձ չտեսավ։ Հիմի ծառի տակին կուչ եկած մտածում եմ, թե կրակե՞մ՝ ուղիղ գլխիս կընկնի։ Ասի՝ ինչ ուզում է թող լինի։ Պառկած տեղից հրացանը դոշին դեմ արի և «տրաք-տրա՛ք», երկու անգամ կրակեցի։ Ոռնաց. երկու թաթով գըրկեց ծառն ու սկսեց կրծել։ Էլի կրակեցի. դեսուդեն է նայում ու չի հասկանում, թե որտեղից է գալիս գնդակը։ Հրացանիս մեջ փամփուշտ չմնաց։ Ո՞նց նոր փամփուշտներ հանեմ, ախար որ նկատեց՝ մահս կգա։ Փորսող տալով մտա փտած գերանի տակը, անդունդի պռնկին եմ, էլ առաջ գնալու հնար չկա։ Ջանս դող է ընկել, ասում եմ՝ էս է, վերջս եկել է։

Ո՞ւր են ընկերներս. ինչի՞ չեն գալիս իմ կրակոցների վրա։ Սսկվել եմ. հույսս Հանեսի և Արթինի վրա է։ Գերանի տակից թաքուն մտիկ եմ անում. ի՞նչ տեսնեմ՝ արջը պպզել է էնտեղ. որտեղ ես էի քիչ առաջ։ Արյուն է գալիս դոշից. ոտից. կողքից ... Օրորվելով առաջ եկավ ու կանգնեց կողքիս՝ հենց քարափի ծերին ու գլուխը դեմ արավ մի քարի։ Աչքերն էնպես են շաղվել. որ ինձ չի տեսնում։

Կամաց գլուխս բարձրացրի ու հրացանի կոթով բոթեցի առաջ։ Արջը գլխի վրա տնկվեց. կոճղի նման շուռ եկավ ու գլորվեց քարափից ներքև։ Ազատ շունչ քաշեցի, բարձրացա սարի գլուխն ու ինչքան ուժ ունեի գոռացի.

— Ադա Հանե՛ս, Արթի՛ն, եկե՛ք. արջը սպանել եմ, հե՛յ...

— Հե՛յ,— լսվեց Հանեսի ձենը Ուսուբի սարի քարափներից։

— Գալիս եմ, հե՛յ.— լսվեց Արթինի ձենը Արփավուտի գլխից։

Մնացի զարմացած, թե էս մարդիկ ի՞նչի են էսպես իրար կորցրել։ Նստեցի։ Արթինն եկավ ինձ գտավ։

— Ա՛յ տղա, էդ ու՞ր եք կորել, Արփավուտի գըլխին դու ի՞նչ բան ունես։

— Շաքար ամի, մեր մեղքն ինչ պահենք. թվանքի տրաքոցներ որ լսեցինք. մտածեցինք. որ ղաչաղներ կլինեն. ու ամենքս մի կողմի վրա փախել ենք. գլուխներս ազատելու համար։

Ծիծաղեցինք։

— Համա դարդիման ընկերներ եք. հա՛... Դե վազիր գոմերից երկու լուծ եզ բեր, որ արջը տանենք։

Ծմակը մթնեց. Հանեսը եկավ երկու լուծ եզն առաջն արած։

Համա արջը մեծ չարչարանքով դուրս բերինք ձորից. եզները քրտինքի մեջ կորել էին։ Ես վաթսունհինգ տարվա որսկան եմ, հալա էդքան մեծ արջ չեմ սպանել։ Ինչ ասեմ՝ մի դեզի չափ բան էր։ Միայն կաշին երկու փութ եկավ. իսկ յուղը՝ հինգ փութ։

# ՏԱՏՍ ՈՒ ԱՂԱՎՆԻՆԵՐԸ

*ԳԵՎՈՐԳ ԱՎՋՅԱՆ*

Աղավնիներն իմ ճերմակ
Մեր տանիքին ամեն օր
Երգ են ասում երկնի տակ
Ու ճախրում են բախտավոր։

Ձյան պես ճերմակ մազերով
Տատս նստած պարտեզում,
Հետևում է ու սիրով
Նրանց աղմուկն է լսում։

Տատս ճախրանքը նրանց
Կորցնում է եթերում,
Հետո ակնոցը դրած՝
Գտնում է, ետ է բերում։

Ձյան պես ճերմակ մազերով
Տատս նստած պարտեզում,
Ուրախությամբ ու սիրով
Նրանց աղմուկն է լսում։

Աղավնինե՛ր իմ անգին,
Գարնան կանաչ մշուշում,
Իմ լավ, բարի տատիկին
Ի՞նչ եք անվերջ դուք հուշում։

*Նկ. ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԻ*



# ԹԵ ԻՆՉ ԵՂԱՎ, ԵՐԲ ՀԱՅՐԻԿԸ ՊԱՏԺԵՑ ԼԱԼԱՅԻՆ

ԱՆՈՒՇԱՎԱՆ ՔԱՆՔԱՆՅԱՆ

Ուզո՞ւմ եք պատմեմ, թե ինչ եղավ մի անգամ, երբ հայրիկը պատժեց Լալային: Կարծես թե ոչ մի արտակարգ բան չեղավ. Լալան անկարգություն արեց, մայրիկը հուզվեց-բարկացավ, հայրիկն էլ ստիպված էր պատժել նրան:

— Գնա տե՛ղդ կանգնիր,— հրամայեց հայրիկը:

Լալան իսկույն հասկացավ, որ հայրիկը խիստ է բարկացել. գող աղվեսի նման պոչը քաշեց ու, աչքի տակով քրոջը նայելով, մտավ իր անկյունը՝ զարդասեղանի ու պատի արանքում:

— Մինչև երբ պիտի կանգնի՞,— հարցրեց Նունիկը:



Որ ասում եմ՝ երեխա պատժելը հեշտ գործ չէ: Դե եկ ու որոշիր, թե մինչև երբ պիտի կանգնի: Եվ հայրիկը վճռեց այսպես.

— Մինչև որ դռան զանգը տան...

Լալան իր անկյունից նայեց Նունիկին ու ժպտաց: Նունիկը նայեց մայրիկին ու ժպտաց: Մայրիկը խոհանոցից նայեց հայրիկին ու ժպտաց:

Ախր, շատ տարօրինակ պատիժ էր հնարել հայրիկը: Դրա համար էլ լրագրով ծածկեց երեսը՝ իբր ոչինչ չի պատահել:

Որոշ ժամանակ բոլորն էլ լուռ էին: Ամեն մեկը մտածում էր իր գործի մասին:

Լալան մտածում էր.

«Հիմա Դրիշիկը կգա ու կասի.

— Լալա՛... Մաման ասում է, թող Լալան գա մեր տուն խաղանք»:

Նունիկը մտածում էր.

«Հիմա Համլիկը կգա ու կհարցնի.

— Նունիկ... Պատմության դասի տեղը չե՞ս ասի. ես կորցրել եմ էջանշանս»:

Մայրիկը մտածում էր.

«Հիմա տիկին Մարոն կգա ու կասի.

— Շատ ներողություն... Երկու հատ մաղադանոս չե՞ք ունենա բորշչի համար... Շուկայից բոլոր ապրանքները գնեցի, մաղադանոսը մոռացա»:

Հայրիկը մտածում էր.

«Հիմա Վրամ քեռին կգա ու կգոռա.

— Հերի՞ք չի՞ կարդաս, պատվելի հարևան... Իջնենք բակ, շախմատ խաղանք»:

Բոլորն էլ մտածում էին, որ հյուրերը պիտի սեղմեն զանգի կոճակը: Բոլորն էլ, ականջները սրած, զանգի ձայնին էին սպասում:

Բայց րոպեները անցնում էին, և ո՛չ Դրիշիկն էր գալիս Լալային իրենց տուն կանչելու, ո՛չ Համլիկն էր գալիս Նունիկից դասի տեղն իմանալու, ո՛չ տիկին Մարոն էր գալիս մայրիկից բորշչի համար մաղադանոս խնդրելու, ո՛չ էլ քեռի Վրամն էր գալիս հայրիկին շախմատի հրավիրելու:

Ամենից շատ անհանգստանում էր Նունիկը: Չէ՞ որ նա էլ մեղավոր էր քույրիկի պատժվելու համար:

Հայրիկը Լալային պատժեց, որովհետև մայրիկը բարկացավ: Իսկ մայրիկը բարկացավ, որովհետև Նունիկն ու Լալան կռվեցին: Իսկ Նունիկն ու Լալան կռվեցին, որովհետև մայրիկը խոհանոցից կանչեց.

— Երեխաներ, սուր դանակը պատշգամբում մնաց. խնդրում եմ բերեք:

Նունիկը Լալայի տիկնիկի համար շոր էր կարում:

— Լալա ջան, վազիր,— ասաց նա:

— Դու վազիր,— պատասխանեց Լալան:

— Որ այդպես է՝ տիկնիկից շորը չեմ կարի:

— Մի՛ կարի, ես էլ թելը կպոկեմ:

Ասաց և այդպես էլ արեց:

Նունիկը ուզում էր փրկել տիկնիկին, բայց չհասցրեց: Խեղճ տիկնիկը մի կողմ ընկավ մեջքի վրա, պոկված թելը՝ մի կողմ: Նունիկն ու Լալան քաշքշեցին իրար, աղմկեցին, մայրիկը ինքը գնաց դանակի հետևից և, իհարկե, բարկացավ:

Դե, ասեք, այստեղ ի՞նչ պիտի աներ հայրիկը: Նա մտածեց՝ ինչպե՞ս վարվել. ո՞ւմ պետք է պատժել. մեծի՞ն, թե՞ փոքրին, թե՞ երկուսին էլ:

Վերջապես նա եզրակացրեց, որ Լալայի հանցանքն ավելի մեծ է:

Եվ ահա Լալան կանգնած է անկյուն-պատժանոցում:

Հայրիկը կիրակնօրյա թերթերն է կարդում, բայց ոչինչ չի հասկանում կարդացածից։ Մայրիկը խմորեղեն է պատրաստում, բայց խառնել է ալրի ու շաքարավազի չափերը։ Քույրիկը փորձում է տեղը դնել տիկնիկի թևը, բայց ոչ մի կերպ չի կարողանում։

Տեսնու՞մ եք, մի փոքրիկ անկարգությունը ինչպիսի՜ խառնաշփոթություն է առաջացրել ընտանիքում։

Ոչ ոք չի հասկանում, թե որն է իր անհաջողության պատճառը։ Միայն Լալան՝ այս ամենի գլխավոր հերոսը, որ խորամանկ աղվեսի պես աչքի պոչով հետևում էր լրագիր կարդացող հայրիկին, խմորեղեն եփող մայրիկին, տիկնիկին վիրահատող քույրիկին, շատ լավ գիտի, թե ինչու հայրիկը, մայրիկը և քույրիկը չեն կարողանում գլուխ հանել իրենց գործերից։ Բոլորը սպասում են դասի զանգին և, քանի որ զանգը չի հնչում, տխրել են ու մոռացել, թե ինչպես պետք է նստել, որպեսզի հասկանաս կարդացածդ, թե որտեղ է շքեղ կազմով այն գիրքը, որի մեջ բոլոր խմորեղենների մասին ամեն ինչ գրված է, թե ինչպես պետք է քաշել լարը տիկնիկի ուսից, որպեսզի պոկված թևը տեղն ընկնի։

Ահա թե ինչու պատժված Լալան ուրախ է, իսկ ազատության մեջ գտնվող քույրիկը, մայրիկը և հայրիկը տխուր են ու չեն խոսում։

— Զը՜րնգ... Զը՜րնգ...

Բոլորը գլուխները բարձրացրին։ Բայց դա շատ թույլ զանգ է։ Քեռի Վռամենց զանգն է, որ լսվում է նաև այստեղ։ Եվ նորից բոլորն իրենց գործին անցան։

Նունիկը սկսեց զղջալ, որ իսկույն չգնաց դանակը բերելու, մայրիկը զղջաց, որ բարկացավ, հայրիկը զղջաց, որ պատժեց երեխային։ Միայն Լալան ոչ մի բանի համար չի զղջում։ Լալան գիտի իր գործը։ Նա միայն մի բանի է սպասում. սպասում է, որ քույրիկն իր կողմը նայի։

Վերջապես, քույրիկն ասաց.

— Խեղճ տիկնիկ, առանց թևի ինչպե՞ս պիտի ապրես։

Մայրիկն ասաց.

— Քոռանամ ես՝ տորթս փչացավ։

Հայրիկն ասաց.

— Կիրակնօրյա թերթեր են, բայց ոչ մի հետաքրքիր բան չկա։

Հայրիկը մի կողմ դրեց լրագրերը և նայեց մայրիկին, մայրիկը լքեց կրեմոտ մասը և նայեց քույրիկին, քույրիկը պինդ գրկեց տիկնիկին և նայեց Լալային։ Եվ բոլորը ինչ-որ բան ասացին իրար, առանց մի բառ արտասանելու, միայն աչքերով։ Աչքերով խոսեցին։ Եվ հրաշալին այն էր, որ բոլորն էլ հասկացան իրար։ Իսկ ամենից լավ Նունիկը Լալային հասկացավ, որովհետև արագ վեր թռավ գորգի վրայից և հարցրեց.



Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

— Հայրիկ, գնա՞մ տեսնեմ, նոր թերթեր բերե՞լ են։

Բոլորն էլ գիտեին, որ թերթերը մի քիչ առաջ էին բերել, նախաճաշից անմիջապես հետո։ Բայց հայրիկը նայեց Նունիկին, Նունիկը նայեց մայրիկին, մայրիկը նայեց հայրիկին. ոչ ոք Լալայի կողմը չնայեց, հայրիկն ասաց.

— Գնա։

Նունիկը դուրս վազեց, և նրա հետևից, չխկոցով փակվեց անգլիական կողպեքը։ Պատահել է, որ հայրիկը դրա համար բարկացել է Նունիկի վրա։

— Երբ գիտես, որ երկու րոպեից վերադառնալու ես,— ասել էր հայրիկը,— սողնակը դիր արգելակի վրա։ Ինչո՞ւ ես անհանգստացնում մայրիկին, ինչո՞ւ ես խանգարում հայրիկին։

Իսկ հիմա՞...

— Զրը՜նգգ... Զր՜նգ-զրնգ... Զրը՜նգգ...

Հնչեց դռան զանգը՝ անհամբեր, զվարթ...

Լալան գնդակի պես դուրս թռավ իր անկյունից, դեպի դուռը սլացավ։

Երկու քույրերը վերադարձան՝ իրար գրկած։

Լալան վազեց դեպի տիկնիկը և ասաց.

— Ես հիմա տեղը կդնեմ տիկնիկի թևը։ Քանի՜ անգամ եմ պոկել...

Նունիկը վերցրեց պատմության դասագիրքը և ասաց.

— Գնամ Համլիկից դասի տեղն իմանամ։ Էջանիշանս կորցրել եմ...

Մայրիկը հանեց գոգնոցը և ասաց.

— Գնամ տիկին Մարոյից մաղադանոս ուզեմ։ Բորշչի համար բոլոր պարագաները գնեցի, մաղադանոսը մոռացա։

Հայրիկը թևի տակ դրեց շախմատը և ասաց.

— Գնամ Վռամի հետ շախմատ խաղամ...

Բոլորը նորից իրար նայեցին, ինչ-որ բան խոսեցին իրար հետ, բայց առանց որևէ բառ արտասանելու, միայն աչքերով։ Բոլորը մի բան հիշեցին. ընդամենը երկու օր առաջ պարզվել էր, որ Լալայի ձեռքը հասնում է անգլիական կողպեքի սողնակին։ Ճիշտ է, դուռը բացելու համար նա ոտքի թաթերի վրա է բարձրանում, ձգվում է ամբողջ մարմնով, բայց արդեն կարողանում է քաշել սողնակը։

Բոլորը հիշեցին և բոլորն էլ ժպտացին. հայրիկը ժպտաց մայրիկին, մայրիկը ժպտաց Նունիկին, Նունիկը ժպտաց Լալային, Լալան ժպտաց տիկնիկին։

Լալան ասաց.

— Տեսեք, տիկնիկս պատրաստ է...

Տիկնիկի թևը, իրոք, տեղում էր, և բոլորը հանգստացած գնացին՝ ամեն մեկն իր գործով։

Տանը մնացին Լալան ու իր տիկնիկը։ Նրանք սպասում էին դռան զանգին, որպեսզի վազելով գնան ու բացեն դուռը՝ հայրիկի համար, մայրիկի համար, քույրիկի համար, և բոլոր նրանց համար, ովքեր կգան Լալայենց տուն։

# Մի կերպ, մի կերպ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

— Մնացակա՜ն,
Մնացակա՜ն,
Օրագիրդ այստեղ բեր...—
Նա մեկնում է օրագիրը
Հանգի՜ստ,
Անփու՜յթ,
Անտարբե՜ր...

Բաց եմ անում ու զարմացած
Աչք եմ գցում վարից վեր,
Ոչ «վատ» ունի,
Ոչ «գերազանց»,
«Միջակ», «միջակ»... «միջակներ»...

— Երգել գիտե՞ս, Մնացակա՛ն։
— Դե, երգում եմ, ի՞նչ ասեմ...
— Վազել գիտե՞ս, Մնացակա՛ն։
— Ոչինչ, մի կերպ կվազեմ։

— Քեզ աշու՞նն է շատ դուր գալիս,
Թե՞ սիրում ես շոգ ամառ։—



Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԲԱՏՅԱՆԻ

Նա ասում է՝ ինչ էլ լինի՝
Միևնույն է ինձ համար։

— Մնացակա՛ն, լողալ գիտե՞ս։
— Ոչինչ, մի կերպ կլողամ։
— Ջմուշկներով սղղալ գիտե՞ս։
— Մի կերպ, մի կերպ կսղղամ։

— Տղա՛ս, ինչպե՞ս պիտի հասնես
Դու մանկության քո հեռվից
Մի կերպ, իմ կերպ մեծանալով՝
Մի մեծ բախտի հետևից։

# Նոր [illegible] երգ

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նայի՛ր, գալիս է մեզ մոտ
Այն գյուղացին դանդաղկոտ.
Թե հարցնես՝ ինչպե՞ս է
Անցկացնելու Նոր տարին
Եվ Նոր տարուն ինչե՞ր է
Ցանկանում նա աշխարհին,

— Դե, իհարկե, ես դեմ չեմ,
Կասի ծերուկն անպատճառ,—
Որ ամեն մի տան մեջ էլ
Դրվի սիրուն տոնածառ.
Ու թող վառվեն ողջ գիշեր
Լույսեր փոքրիկ ու պայծառ,
Լույս, ջերմություն տան նրանց,
Որ ապրում են դեռ խոնավ
Խրճիթների մեջ խավար:

Իսկ եթե այդ հարցը տամ
Փոքրիկ, սիրուն այն ծտին,
Որ ծլվլում է անգամ
Ձմռան բքին ու ցրտին,
— Ցանկանում եմ,—կասի նա,—
Որ մանուկները բոլոր
Լավ նվերներ ստանան,
Լինեն ուրախ, բախտավոր:

Իսկ, ա՛յ, հովիվ այդ հսկան
Նկարից է ինձ ծանոթ.
Այդ նույն հարցով մի անգամ
Գնացի ես նրա մոտ.
Եվ նա ասաց. «Օրերի
Համար տոն ու կիրակի



Կգրեի օրենք մի
Երկար պոչով մտրակի.
Ուզում եմ ես, կասեի,
Որ այդ տոնը հավաքի
Արցունքները Պերուի,
Եվ մինչ հեռու Կուրիլյան
Կղզիները ուղարկի.
Որ Նոր տարին ոնց արև
Մանուկներին ներմակ, սև,
Նաև դեղին ցեղերի՝
Նու՛յն ժպիտը նվիրի.

Իսկ թե կուզես՝ կասեմ քեզ,
Առանց ստի, կատակի,
Որ կհասնենք մենք, այո,
Մի նոր պայծառ գալիքի,
Եթե միայն եղբոր պես
Ձեռք-ձեռքի տանք ամեն ժամ,
Կանգնենք իրար թիկունքի

Եվ օրերում այդ պայծառ
Կզարդարենք մենք քանի՝
Վառ ու շքեղ տոնածառ.
Ինչե՛ր ասես չենք անի.
Եվ տոնը այս, որ պիտի
Գա և իսկույն չքանա,
Գնա և իր հետ տանի
Ամեն խնդում՛ ու բարիք.—
Այն ժամանակ էլ մեզնից
Նա երբեք չի՛ հեռանա.
Տո՛ն կլինի ողջ տարին»:

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆԸ

ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

## ԵՍ ԵՎ ՄԱՅՐՍ

(Աշակերտական նոթատետրից)



*Մի երեկո ասի մորս.*
*— Մայրիկ, գնա՞մ պարի:—*
*Նա հառաչեց, ասաց.—Լո՛րս,*
*Գնա՛, բայց շուտ արի:—*
*Սակայն այնքան տխուր սրտով*
*Ասաց մայրս բարի,*
*Որ ավելի լավ է ասեր.*
*— Չէ՛, մի՛ գնա պարի...—*

*Լուսամուտից նայեցի դուրս,*
*Դրսում բուք էր վայրի,*
*Նոր հասկացա՝ ինչու՝ մայրս*
*Զուզեց՝ գնամ պարի:*

## ԱՐՏՈՒՅՏՆ ՈՒ ԵՍ



*Ալեծածան մի արտում*
*Մի օր տեսա մի արտույտ,*
*Ա՛խ ես շատ եմ երգասեր,*
*Խնդրեցի՝ ինձ երգ ասեր,*
*Բայց դուրս թռավ իր բնից...*
*Որսորդի տեղ դրեց ինձ:*



## № 3 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1966

## ՄԵՐ ՍՊՈՐՏՍՄԵՆՆԵՐԸ

«Շողացե՛ք, լենինյան աստղեր» համամիութենական ստուգատեսը մեծ աշխուժություն է առաջացրել Հոկտեմբերյան քաղաքի № 1 միջնակարգ դպրոցում: Դրուժինայում ստեղծվել են շատ ակումբներ:

Հետաքրքիր աշխատանքներ է կատարել «Օլիմպիա» սպորտային ակումբը: Պիոներները անց են կացրել միջջոկատային ֆուտբոլի մրցություն, որտեղ առաջին տեղը գրավել են 8-րդ «Ա» դասարանի տղաները:

Ակումբը հանդիպում է կազմակերպել սպորտի վաստակավոր վարպետ Ալբերտ Ազարյանի հետ: Սպորտի վարպետը շատ հետաքրքիր նորություններ պատմեց: Մեր 4-րդ դասարանցի, մարմնամարզիկ Հրաչիկ Մարգարյանին արդեն բոլորը գիտեն հանրապետությունում, իսկ Էդվարդը, Լափսան, Միշան շրջանում հայտնի են իրենց մարմնամարզական ճկունությամբ: Ակումբն ունի իր թերթը և ստենդը:

*ԶՄՐՈՒԽՏ ԱՍԱՏՐՅԱՆ*
*Հոկտեմբերյանի № 1 միջնակարգ դպրոցի Ղուկաս Ղուկասյանի անվան պիոներական դրուժինայի ավագ ջոկատավար*

Նոյեմբերյանի 8-ամյա դպրոցի «Մարտական փառք» ակումբի անդամները ստեղծել են Սովետական Միության հերոս Ջահան Ղարախանյանին նվիրված անկյուն: Նրանք բարեկամական կապ են հաստատել հերոսի հարազատների հետ, հաճախակի այցելում են նրանց:

## Պիոներների ձեռքերով

Պիոներները կոմերիտականների հետ միասին պատրաստել են մի շարք ստենդներ, որոնք պատմում են մեր շրջանից ռազմաճակատ մեկնած մարտիկների մասին: Նրանք հաճախակի հանդիպումներ են կազմակերպում Հայրենական պատերազմի մասնակիցների, հին բոլշևիկների հետ:

«Տուրիստական» ակումբի անդամները դպրոցի դիրեկտոր ընկ. Սամվել Զիլինգարյանի ղեկավարությամբ դպրոցում ստեղծել են հնագիտական թանգարան: Թանգարանն ունի տարբեր բաժիններ: «Հին կենցաղային իրեր» բաժնում ցուցադրվում են հնադարյան մարդկանց գործունեության իրերը, իսկ «Նոյեմբերյանի անցյալն ու ներկան» բաժնում կան նկարներ, որոնք պատմում են հին Բարանայի ու այժմյան Նոյեմբերյանի մասին: Ակումբի անդամները պատրաստել են ալբոմներ, որոնց նյութերն ու նկարները պատմում են իրենց կատարած աշխատանքների մասին:

*Մ. ԳԵՏՐՈՍՅԱՆ*
*ՀԼԿԵՄ Նոյեմբերյանի շրջկոմի քարտուղար*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԳՐՈՒՄ ԵՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Չոլաքար գյուղի միջնակարգ դպրոցի «Պատանի հետազոտողների» ակումբը վերջերս արշավի դուրս եկավ դեպի Արփա-Սևան համաժողովրդական կառույցը: Ակումբի անդամները դիտեցին ջրանցքի շրջակայքը, զրուցեցին շինարարների հետ և գրեցին կառույցի պատմությունը:

Պիոներները արդեն հավաքել են հետաքրքիր շատ նյութեր, որոնց օգնությամբ գրում են իրենց գյուղի պատմությունը:

*ՄԱՐՏՈՒՆԻ, ՀԼԿԵՄ ՇՐՋԿՈՄ*



## ԼԵՆԻՆԻ ՍԵՆՅԱԿՈՒՄ

Ստեփանակերտի գիշերօթիկ դպրոցի պիոներները ստեղծել են Վ. Ի. Լենինին նվիրված սենյակ, որտեղ հավաքել են նրա կյանքի ու գործունեության մասին պատմող հուշագրություններ տարբեր լեզուներով, նամակներ լենինյան վայրերից՝ «Լենինը և աշխարհի գրադարանները» վերնագրով:

Նվիրված սենյակ։ Լենինյան սենյակում փակցված են մեծ առաջնորդի կյանքն ու գործունեությունը պատկերող լուսանկարներ, հետաքրքիր փաստաթղթեր, բից. Վ. Ի. Լենինի զարաբաղյան զինակիցների լուսանկարները, տեղեկություններ նրանց կյանքից և գործունեությունից։ Պիոներները կազմել են քար-

ԷՐՆՈՍ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

*Լեռնային Ղարաբաղ, կոմերիտմիության Ստեփանակերտի քաղաքային կոմիտեի դպրոցական բաժնի վարիչ*

## ԱՇԽԱՏԱՆՔՆ Է ԳԵՂԵՑԿԱՑՆՈՒՄ ՄԱՐԴՈՒՆ

Դրուժինայի կատարած աշխատանքներին ակտիվ է մասնակցում «Աշխատանք» ակումբը, որի նշանաբանն է. «Աշխատանքն է գեղեցկացնում մարդուն»։

Մենք հավաքել ենք 8 տոննա մետաղի ջարդոն։ Գարնանը ընթերցելով Վ. Անանյանի երկրորդ կոչը՝ վայրի անտառները պատվաստելու մասին, մենք մեր դպրոցի դիրեկտոր ընկեր Իսախանյանի, պատվաստման շտաբի պետ ընկեր Վ. Զաքարյանի ղեկավարությամբ կատարեցինք 1300 պատվաստ։

Գարնանը և աշնանը սար բարձրացանք, նոր ծառեր տնկեցինք։ Մենք արդեն խնամում ենք 800 տնկի։

Ամառային արձակուրդներին մենք օգնել ենք սովխոզին. մշակել ենք 27 հեկտար եգիպտացորենի ցանքատարածություն, մասնակցել ենք խոտհավաքին, ծխախոտի քաղ ու շարին։

ՍՈՒՐԵՆ ԱՂԱՋԱՆՅԱՆ

*Իջևանի Վ. Աղդամի միջնակարգ դպրոցի «Աշխատանք» ակումբի նախագահ*

## ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ, ՍԻՐԵԼԻ ԹՈՌՆԻԿՆԵՐ

Մեր գյուղում կան մի քանի տատիկներ, որոնք մենակ են ապրում, ոչ մի օգնող չունեն։ Այս տարի մեր ջոկատը որոշեց օգնել մենակյաց տատիկներին։ Հաճախ մենք գնում ենք նրանց տուն, մաքրում բանջարանոցը, սածիլներ տնկում, ցախը կոտրատում, կարդում օրվա թերթերը, պատմում հետաքրքիր նորություններ։ Եվ ամեն անգամ մենք ուրախ-ուրախ հեռանում ենք՝ լսելով նրանց գոհունակությունը.

— Շնորհակալություն, սիրելի թոռնիկներ։

ՕՎՍԱՆՆԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

*Սիսիանի շրջան, Աշոտավանի 8-ամյա դպրոցի 4-րդ ջոկատի խորհրդի նախագահ*



ՄԵՐ ՉԵՄՊԻՈՆՆԵՐԸ

Տեսեք, ինչ ուրախ են ժպտում այս պատանիները, նրանք հպարտ են, երջանիկ։ Նրանք բարձր են պահել իրենց դպրոցի պատիվը։

Այս տարի «Պիոներ» ամսագրի գավաթը նվաճելու համար մրցման էին դուրս եկել մեր մայրաքաղաքի պատանի վոլեյբոլիստների աղջիկների և տղաների շատ թիմեր։ Համառ պայքարից հետո գավաթը նվաճեցին 35-րդ դպրոցի տղաների և աղջիկների թիմերը, իսկ մյուսները պարգևատրվեցին Երևանի քաղժողկրթբաժնի դիպլոմներով։

ՊԻԱՍԵԹ

## ԹՄ ԵՐԱԶԱՆՔԸ

Ամեն անգամ, երբ մեր ջոկատավար ընկեր Վեներան մտնում էր դասարան և որևէ միջոցառում անցկացնում, ես ցանկանում էի լինել նրա փոխարեն։ Եվ ահա, այս ուսումնական տարում ինձ նշանակեցին հոկվար առաջին դասարանում։ Ես ինձ երջանիկ եմ զգում, որովհետև երեխաները սիրում են ինձ, ես էլ նրանց եմ սիրում։

Նրանց համար ես կարդում եմ հեքիաթներ, պատմվածքներ, սովորեցնում երգեր ու պարեր։

ՆԵԼԼԻ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

*Անիի շրջան, Մարալիկի միջնակարգ դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ*

## ՀԱՐԳԵԼԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Խնդրում ենք օգնել մեզ՝ նամակագրական կապ հաստատելու ձեր հանրապետության պիոներների հետ։

Մեր հասցեն է.

*Эстонская ССР*
*г. Пыльтсамак*
*Ул. Лилле № 2*
*Комитету „Дружба народов"*
*Пыльтсамакской средней школы*



ԻՆՉՈՒԻԿ

ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ

ԻՆՉՈ՞Ւ ԵՐԲ ՈՐՏԵ՞Ղ

ԱԿՈՒՄԲ

## ՔԱՂԱՔ—ՈՒՐՎԱԿԱՆԸ

Այս լուսանկարում դուք տեսնում եք աշխարհի ամենագեղեցիկ օպերային շենքերից մեկը, որը կառուցված է բրազիլական Մանաուս քաղաքում 1896 թվականին: Թատրոնի առջևի հրապարակը պատած է գունավոր մարմարե խճանկարով: Այս շենքը Միլանի Լա-Սկալա թատրոնի կրկնօրինակն է: Քանի՞ միլիոն է նստել այդ շենքի կառուցումն այստեղ՝ Ամազոնի ջունգլիների կենտրոնում: Այն ժամանակ դա ոչ ոքի չի մտահոգել: Շամպայն գինին գետի պես է հոսել այս քաղաքում: Այստեղ ավելի շատ են խմել, քան Փարիզում: Կաուչուկատու հևեյան աճում էր միայն Բրազիլիայում, և տեղական իշխանությունները զենքով էին հսկում, որպեսզի մարդիկ չտեղափոխեն այդ բույսն ու չաճեցնեն այլ վայրերում: Գավառական Մանաուս քաղաքի փողոցներում էլեկտրական լույսերը ավելի շուտ էին սկսում շողշողալ, քան Լոնդոնում: Այստեղի միլիոնատերերը իրենց սպիտակեղենը Եվրոպա էին ուղարկում լվանալու, իսկ սպասավորներին ադամանդ էին նվեր տալիս:

Ամեն ինչի վերջը եկավ այն ժամանակ, երբ ծեռներեց ու խելահեղության աստիճան համարձակ անգլիացի Հենրի Վիկհեյմը կաուչուկի ծառի 70 հազար սերմ տարավ այստեղից՝ դրանք լցնելով կոկորդիլոսի խրտվիլակի մեջ: Բայց նա կարողացավ բարեհաջող տեղ հասցնել ընդամենը 2800 սերմ: Ցեյլոնում, ապա նաև Մալայայում բարձրացան հևեյայի ծիլերը: Կաուչուկի արքաները դուրս մղվեցին ջունգլիներից:

Այդ պատճառով էլ դադարեց Մանաուսի ծաղկումը:

Այժմ քաղաքի փողոցներում անօթևան շներն են թափառում:

Ծառերի վրա մռայլորեն ծվարում են գառնանգղները: Եվ ուրվական-քաղաքի կենտրոնում օպերայի հոյաշեն շենքի պատերն ի վեր մագլցում են լիանաները:

## ԺԱՅՌԱԲՆԱԿ ՄԱՐԴԻԿ

Վեհապանծ ժայռերը հարյուր հիսուն մետրանոց բարձրությամբ վեր են խոյանում մացառապատ, ընդարձակ տափաստանում: Դրանց վիթխարի բեկորները բազում խորխորատներով ու քարանձավներով պոկվել են լեռների ընդհանուր շղթայից: Բայց անմատչելի թվացող ելուստներում եռում է կյանքը: Այստեղ, ժայռերի այս լաբիրինթոսում, փրկվելով արյունահեղ ընդհարումներից, դեռևս ութ դար առաջ բնակություն է հաստատել դոգոնների ցեղը: Եվ այժմ նրանք միանգամայն մեկուսացած են ապրում Մալիի հանրապետության մյուս ցեղերից:

Նրանց բնակավայրում երևում են կոնաձև տանիքներով ծղոտե հյուղակներ, կավածեփ ցցադրաններ և ամենուրեք մագլցող մարդիկ: Ահա հաստ պարանը, որին իր շատ փոքրիկ դաշտն է ուղևորվում դոգոնը: Քարանձավների մեջ նա անցնում է կորեկ և գետնանուշ: Նրա ձեռքին բրիչ կա ու սերմերով լի պարկ: Իսկ այս երիտասարդ աղջիկները գնում են ջրի: Երաշտի ժամանակ աղբյուր տանող կիլոմետրանոց ճանապարհը լեռների ու ժայռերի վրայով պահանջում է գրեթե ակրոբատիկ արվեստ: Փորձեք անցնել այդ ճանապարհը դատարկ ձեռքերով, դա էլ կպա-

# ՕՐԱՆԳ ԲԼԱՆԴԱ

Ինչ տարօրինակություններ ասես որ չի ստեղծել բնությունը: Դրանցից մեկը երկարաքիթ կապիկն է: Դժվար է ասել, թե նրա ինչին է պետք այդպիսի մեծ քիթը, բայց ավելի դժվար է պատկերացնել, որ կարճաքիթ, փոքրիկ, աշխույժ կապիկներից աճում են այդպիսի ալարկոտ ու անճոռնի էակներ:

Բնությունը երկարաքիթ կապիկներին հատկացրել է մի ոչ մեծ անկյուն՝ Կալիմանտան կղզին: Եթե ջրառատ գետերով նավելու լինեք կղզու խորքը, ապա կապիկները կհանդիպեն ամեն մի ոլորանում կամ սպունգի նման խոնավ ու փխրուն հողի վրա նստած, կամ լիանաների վրա աներկյուղ ճոճվելիս: Ասել, թե այդ կապիկները շատ են անճոռնի, չի կարելի, նախ՝ այն պատճառով, որ երկար քիթը երիտասարդ կապիկներին նույնիսկ գեղեցկացնում է, նրանց կճատ կերպարանքը դարձնելով զվարճալի ու համակրելի, իսկ երկրորդ՝ բոլոր երկարաքիթ կապիկները հմայիչ գույնի մազեր ունեն. ժանգա-կարմիր՝ վերևից և մուգ դեղնավուն՝ տակից, իսկ գավակի, պոչի և թաթերի վրայի մազերը գորշավուն են: Բայց այդպիսի աներևակայելի երկար, երբեմն կզակից էլ ցած իջնող քիթը նրանք «ձեռք են բերում» միայն ծերանալիս: Զայրույթի պահին երկարաքիթ կապիկը ուռեցնում է իր քիթը, որից այն ավելի է երկարում ու հաստանում: Իսկ երբ կապիկը հանգիստ է, նրա քիթը կախ է ընկնում ինչպես թառամած վարունգ:

Կապիկներն ապրում են մեծ ընտանիքներով: Առավել խոշոր արուները հասնում են 1,5 մետր բարձրության և կշռում են 23 կիլոգրամ, էգերը՝ կիսով չափ պակաս: Ծեր ծնողները կամ անհոգ կերպով քնում են բարձրաբերձ ծառերի խիտ տերևների մեջ, կամ ախորժակով ուտում իրենց սիրած ռիզոֆորի տերևներն ու արմատները և նիպա արմավենիների կարմիր ծաղիկները: Իսկ երիտասարդները ամբողջ օրը ո՛չ հոգս ունեն, ո՛չ հոգնածություն: Նրանց շարժումների սրընթացությունը և գլխապտույտ ոստյունների անվեհերությունը ցնցող տպավորություն են թողնում: Դրան ընտելացնում են նրանց անճոռնի մայրիկները, որոնք շարունակ վայր են գցում իրենց մանկիկներին: Իսկ մի փոքր հասակ առած «չարաճճիները» արդեն իրենք են համարձակորեն գլխիվայր նետվում վիթխարի ծառերի կատարներից, ճարպկորեն ընդհատելով մահաբեր թռիչքը ցածի ճյուղերի վրա: Անտառում այդ պահին լսվում են կապիկների հաճախակի ու բարձրագոչ ճիչեր. «խո՜նկ», «կիխո՜նկ»: Կեսօրին այդ ճիչերը փոքր-ինչ հանդարտվում են: Երկարաքիթ կապիկները մտնում են անտառի խիտ տերևների զովասուն ստվերում և հանգստանում:



Կղզում երկարաքիթ կապիկներին անվանում են «դեղին կապիկներ», «ռասոնչ» կամ

*հանջի արտասովոր հմտություն, որ մնաց թե ջրով լի ամաններ էլ գլխներից լինի: Այո, այդպիսի ծանր պարտականություն է բաժին ընկել դոգոն աղջիկներին:*

*Ժայռերից մեկի ամենավերին մասում հովիվ տղաները պահպանում են հյուծված այծերի ու ոչխարների հոտը, որն հազիվ է կարողանում ցանցառ կանաչը պոկել քարերի միջից:*

*Դոգոններն ապրում են հին կենցաղով, մեծ ընտանիքներով, որ գլխավորում է ավագը: Սովորաբար ընտանիքը տեղավորվում է բարձրավանդակում: Քարանձավները շատ հաճախ միանում են ստորգետնյա անցքերով, և դոգոններն իրենց զգում են կատարյալ անվտանգության մեջ: Ավագն է որոշում բոլոր հարցերը՝ երբ վերանորոգել հյուղակը, որքան պարեն թողնել, ինչ վաճառել: Իրենց պաշարները դոգոնները միասին պահում են ծղոտե շտեմարաններում: Իսկ ավելցուկ կորեկն ու գետնանուշը վաճառում են մոտակա փոքրիկ քաղաքի շուկայում կամ փոխանակում այլ ապրանքների հետ: Դրանով զբաղվում են բացառապես կանայք: Դոգոններն ամենից շատ ամուր ճոպանի կարիք են զգում. դա կացարաններ տանող մի յուրատեսակ բանալի է: Առանց դրան նույնիսկ դոգոններն էլ չեն կարող ժայռերն ի վեր բարձրանալ: Ով ճոպանը մոռացավ՝ տուն չի վերադառնա:*



«օրա՛ գ բլանդո», որ նշանակում է «հոլանդացի»:

Ներկայումս աշխարհի կենդանաբանական այգիներում (բացի Ինդոնեզիայից) կա ընդամենը երեք երկարաքիթ կապիկ: Գերության մեջ նրանց համար դժվար է ընտրել հարմար կերակուր ու ջերմություն:

* * *

Մեծ Բրիտանիայի և Իռլանդիայի գյուղական վայրերի կաթնավաճառները կաթը լցնում են շշերի մեջ և կախում իրենց տան մուտքի մոտ գտնվող սյունից: Թռչունները բաց են անում շշերը և խմում կաթը: Այդ «գողությամբ» զբաղվում են ճնճղուկները, կեռնեխները, ծիծեռնակները, սերինոսները, շիկահավերը, որոնք ձմեռում են Բրիտանական կղզիներում: Անգլիական թռչնաբաններին հետաքրքրել է այդ երևույթը: Կաթով լցված շշերը սկսել են ներկել տարբեր գույներով: Պարզվել է, որ թռչունները սիրում են վառ գույներ ու «գրոհում» են նույնիսկ դատարկ շշերի վրա, եթե դրանք վառ գույներով են ներկված:

* * *

Վերջին ժամանակներս Կալիֆոռնիայում սովորական միկրոֆոնը սկսեցին օգտագործել հասունացող մրգերի լավորակությունը որոշելու համար: Միկրոֆոնը մոտեցնում են ծառից կախված խնձորին: Եթե խնձորի ներսում որդ է բույն դրել, որը կրծում է պտղի միջուկը, բարձրախոսը իսկույն այդ խշշոցը հասցնում է մինչև չարագույժ կրճռոցների: Վնասված խնձորը անմիջապես իջեցնում են ծառից:

* * *

Թռչունների պահպանման վերաբերյալ գերմանական առաջին օրենքը հրապարակել է Տրիերի եպիսկոպոս Թեոդորիխ 2-րդ ֆոն Վիեդը 13-րդ դարում... «Եթե որևէ մեկը սուլոցով կամ այլ կերպ երաշտահավ բռնի, կարտաքսվի երկրից»: Լյուդվիգ Բավարացի թագավորի 1328 թ. հրամանում ասված է. «Ով երաշտահավ որսա, որը ոչնչացնում է պտղակեր վնասատուների և հատուկ պաշտպանության տակ է, խստորեն կպատժվի»:

* * *

Բզեզ-եղնիկի երկարությունը հասնում է 8 սանտիմետրի: Նա կարող է սեփական քաշից 50 անգամ ծանր բեռ տանել:

## ՎՏԱՌԱՅԻՆ ՁԿՆԵՐԻ ԿՅԱՆՔԻՑ

Ձկների շատ տեսակներ սովորաբար լողում են վտառներով, կարծես ենթարկվելով անլսելի մի հրամանի: Ինչպես երևում է, ընկերակցության և կոլեկտիվիզմի բնազդը բավականին ուժեղ են վտառային ձկների շրջաններում: Վտառի տեսապատրանքը ստեղծելու նպատակով հարավային ծովերի գիտա-հետազոտական լաբորատորիաներում օգտագործում են հայելիներ: Եթե վտառային ձկները ջրավազանում կամ ակվարիումում մնում են մենակ, ապա նրանք լող են տալիս դեպի հայելին, երկար կանգնում այնտեղ կամ լողում հայելու մոտ: Եթե նույնիսկ ձեռքը թափով վրա ես բերում, ձուկը չի վախենում և չի փախչում: Ձկան սեփական արտացոլումը պահում է նրան հայելու մոտ, որովհետև ստեղծվում է վտառում գտնվելու տեսապատրանք: Ձուկը չի վախենում, որովհետև իր արտացոլումը նույնպես հանգիստ է: Գիտնականների կարծիքով միայնակ ձկներն ավելի շատ թթվածին են օգտագործում, քան վտառում գտնվելու ժամանակ:

## ՈՐՏԵ՞Ղ Է ԲՈՒՐԱՏԻՆՈՅԻ ԱՐՁԱՆԸ

Պատանի ընթերցող, դու գիտե՞ս, որ գրական ստեղծագործությունների շատ հերոսներ ևս անմահացած են քանդակագործության մեջ: Եկ գնանք նրանց հետքերով:

...Իսպանիայի մայրաքաղաք Մադրիդի հրապարակներից մեկում՝ Սերվանտեսի հուշարձանի առջև դրված է մի պատվանդան, որի վրա կանգնեցված է Դոն Կիխոտ Լամանչեցու և նրա հավատարիմ զինակիր Սանչո Պանսայի բրոնզյա արձանը: Քանդակագործը չի մոռացել և Դոն Կիխոտի երիվարին՝ Ռոսինանտին: Վեպի հերոսը նստած է ձիու վրա:

Հանիբալ քաղաքի կենտրոնում, որտեղ անց է կացրել իր մանկությունը ամերիկացի հռչակավոր գրող Մարկ Տվենը, կա մի հետաքրքիր հուշարձան: Այդ կոթողում հավերժացված են երկու ոտաբոբիկ տղաներ: Դրանք ձեզ քաջածանոթ Թոմ

Սոյերը և Հեքլբերի Ֆինն են։ Հեքը բռնել է իր ուսին դրված սատկած կատվի պոչը։ Տղաների շալվարները պատառոտված են։ Նրանց ամբողջ տեսքը արտահայտում է համարձակություն։

Հիմա էլ եկ մտնենք Կոպենհագեն։ Այս քաղաքի նավահանգստում, հսկայական մի քարի վրա նստած է ձկան պոչով բրոնզյա աղջիկը։ Դա դանիացի մեծ գրող Անդերսենի «Փոքրիկ ջրահարսը» հանրածանոթ հեքիաթի հերոսուհին է։

Իտալիա... Պիստոյա քաղաքից ոչ հեռու, Կոլոդի փոքրիկ գյուղում կա մի գողտրիկ կոթող։ Դա Կարլո Կոլոդիի գրքի հերոս Պինոքիոյի արձանն է։ Պինոքիոն մեզ մոտ հայտնի է Բուրատինո անվամբ։



## Պատասխանում ենք

### «ՊԻՈՆԵՐ» № 9

«ԽԱՉԲԱՌ»— 1—2. Արա։ 1—3. Անի։ 2—4. Աղանա։ 3—5. Իլավա։ 4—6. Անապա։ 5—7. Ազադի։ 6—8. Արագի։ 7—9. Իսանա։ 8—10. Իրսեն։ 9—11. Արսեն։ 10—12. Նեման։ 11—13. Նամակ։ 12—14. Նավ։ 13—14. Կավ։

«ԽԱՉԲԱՌ» (մայրաքաղաքներ)— Հորիզոնական—3. Քաբուլ։ 7. Լագոս։ 8. Ռաբատ։ 9. Հավանա։ 10. Մադրիդ։ 12. Պրագա։ 14. Կարակաս։ 15. Ֆրիթաուն։ 23. Կահիրե։ 24. Լոնդոն։ 25. Կազան։ 26. Թունիս։ 27. Աթենք։ Ուղղահայաց—1. Դակար։ 2. Մոնակո։ 5. Բաղդադ։ 6. Փարիզ։ 7. Բելգրադ։ 11. Պեկին։ 13. Մինսկ։ 16. Դուշանբե։ 17. Աբիջան։ 18. Կիև։ 19. Դելի։ 20. Ռանգուն։ 21. Լա Պաս։ 22. Տոկիո։

«ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ»— 1. Ֆրանսիական նկարիչ Էժեն Դելակրուան հայտնի դարձավ դեռ 23 տարեկան հասակում, երբ ներկայացրեց իր «Դանթեի նավակը» կտավը։ Դրանից հետո նա ստեղծեց «Քեոսի կոտորածը», «Ալժիրի կանայք», «Տասսոն բանտում» և շատ ուրիշ նկարներ։ Դելակրուան ստեղծել է Շեքսպիրի, Գյոթեի, Բայրոնի, Վ. Սկոտի թեմաներով կատարած յուղանկարներ ու գրաֆիկական գործեր։

2. Ամադեո Մոդիլիանիի նշանավոր գործերից են «Զբարովսկի», «Գիլոմե», «Փոքրիկ աղջիկը», «Ծերունի» և այլ դիմանկարներ, ինչպես նաև գունային նուրբ զգացումով կատարված բնորդուհիներ պատկերող կտավներ։

## «ՈՎՔԵՐ ԵՆ ՄԵՐ ԱՄՍԱԳՐԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ»

### մրցանակաբաշխության արդյունքները

Այս տարի մրցանակաբաշխությանը մասնակցել են 403 դպրոցական։ Նրանցից 238-ը արժանացել են առաջին կարգի նուշաբերքի, իսկ մյուսները՝ երկրորդ կարգի։ Մրցանակաբաշխությունից ոչ ոք դուրս չի մնացել։

---



**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 06926։ Պատվեր՝ 1894։ Տպաքանակ՝ 16600։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 8/XII, 1966 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։ Գինը՝ 20 կ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԷԴՎԱՐԴ ՋԱՔԱՐՅԱՆԻ

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ Դ. Դեմիրճյանի «Արջուկ Լրջուկը»

20 կ. ինդեքս՝ 77806

Հինգ հարյուր տարի առաջ, երբ նկարչության և քանդակագործության թեմաները հիմնականում կրոնական բնույթ ունեին, այնքան էլ հեշտ չէր արվեստագետի համար լինել ժողովրդի հույսերի և ձգտումների արտահայտիչը:

Սակայն Դոնաթելլոն եղավ այդպիսին, և այդ էր պատճառը, որ որպես իսկական ռեալիստ և խորը հումանիստ գրավեց իտալական վաղ Վերածննդի քանդակագործության ամենաաչքի ընկնող տեղերից մեկը:

Մինչև այսօր էլ նրա աշխատանքները մեծ հիացմունք են պատճառում բոլոր իսկական արվեստագետներին. ահա թե ինչու է ամբողջ աշխարհը երախտագիտությամբ նշում մեծ արվեստագետի մահվան հինգ հարյուր տարին:



ԳԱՏՏԱՄԵԼԱՏԻ ԱՐ
(հատված)

# ԴՈՆԱԹԵԼԼՈ



ԱՅԾՈՒՌԸ ՖԼՈՐԵՆ
ԳԵՐ



ԴԱՎԻԴ



ՀՈՒԴԻԹԻ ԳԼՈՒԽԸ